Brandes, Georg

## Գ. ԲՐԱՆԴԷՍ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՒ ԵՒՐՈՊԱՆ

**Բանախօսութիւն կարդացած Բեռլինում,**
**1903 թւի փեբրւար 2-ին**



*Թարգմանեց Ս. Մ.*

Հրատ.
„Դրօշակի" խմբագրութեան.

ԺԸՆԵՎ
1907

ՏԻԿԻՆՆԵՐ ԵՒ ՊԱՐՈՆՆԵՐ,

Պարագաներու բերմամբ, „Եւրոպայի Հայ Ուսանողական Միութեան“ կողմէ հրաւիրուած ըլլալու պատիւը ունիմ այս երեկոյ այստեղ խօսելու համար, իբր մէկը եւրոպացի այն գրագէտներէն որոնք, առաջինը ըլլալով, ձայն բարձրացուցին հայերուն ի նպաստ և աշխատեցան ուշադրութիւն հրաւիրել նորագոյն ժամանակներու ամենէն ահռելի և քստմնելի ողբերգութիւններուն վրայ։

Մտադիր չեմ պարզ գրագէտի մը խօսքերուն մեծ նշանակութիւն ընծայել. շատ լաւ գիտեմ թէ քաղաքական մեծ հարցերու մէջ վերջին խօսքը իշխանութեան գլուխ եղողներունն է։ Սակայն անոնք ալ ստիպուած են, այսօրուայ օրս, յարգել հանրային կարծիքը, երբ հզօր և միաձայն է ան. ահա ասոր համար հարկաւոր է ամէն երկրի մէջ արծարծել այդ հանրային կարծիքը, և մասնաւորապէս գերմանական կայսրութեան մէջ։

Դուք ամէնքնիդ գիտէք, որ վերջի տասը տարիներու ընթացքին մէջ, Տաճկահայաստանը այնպիսի սոսկումներու ասպարէզ եղաւ, որ նոյնիսկ ամենաբարբարոս ժամանակներու պատմութեան մէջ նմանը չենք գտներ։

Մարդ չէր կարող հաւատալ, քանի դեռ չէինք տեսած, ամբողջ ժողովուրդի մը այդօրինակ բնաջնջումին, մարտիրոսութեան և համախումբ կոտորածներուն։

Հարիւր հազարաւոր զոհերու արիւնն է որ օգնութիւն կ'աղաղակէ։

Գիտեմ թէ Թիւրքիան Գերմանիոյ բարեկամ տէրութիւն մըն է, և ճիշտ այս է պատճառներէն մէկը, որ Թիւրք կառավարութիւնը երես առաւ ուզածն ընելու։

Սուլթանի անձի մասին խօսք չեմ ուզեր ըսել։ Բայց այն բարեկամութիւնը որ անոր ցնծութիւն կը պատճառէ, արգելք մը չէ մարդկութեան պաշտպաններուն, որ-

պէսզի անոնք խօսին գերմանացիներու ներկայութեան։

Հունգարիան ցեղային և աւանդական կապերով դարերէ ի վեր կապուած է Թիւրքիոյ հետ, սակայն ան հետաքրքրութիւնով մտիկ ըրաւ հայ դատին ազնիւ ախոյեանը, Փիէռ Քիյառ, երբ սա, անցեալ դեկտեմբերին, Պուդափէշտի մէջ, խօսեցաւ Հայաստանի պատմութեան ամենանորագոյն դէպքերուն վրայ։

Գերման ժողովուրդը աւելի քիչ ազգակցութիւն ունի Թիւրքիոյ հետ քան մաճառ ժողովուրդը և անհամեմատ աւելի զօրաւոր է, այնպէս որ հայկական դատին ինպաստ Գերմանիոյ մէջ հանրային կարծիքի շարժում մը թերևս այժմ կրնայ վճռական նշանակութիւն ունենալ։

Եթէ հայերուն բաժինը միմիայն թշուառութիւնն ըլլար, դարձեալ պէտք չէինք զլանալ անոնց՝ մեր համակրութիւնը։

Անոնք այնքան տանջուած են որ ոչ թէ նկարագրել, այլ պատմելն իսկ անկարելի է, որովհետև մտիկ ընողները պիտի փակէին իրենց ականջները։

Եթէ ըսէի թէ երեք հարիւր հազար հոգի ոչնչացան բռնութեններէն, ցուրտէն և սովէն, շատ թեթև տպաւորութիւն մը միայն կ՚ընէ և չի ցնցեր երևակայութիւնը։

Ի՞նչ օգուտ, զորօրինակ, ըսել որ 1894 օգոստոսին Մուշի շրջակայ գիւղերուն մէջ համայնակի կոտորած մը տեղի ունեցաւ որ երեք շաբաթ տևեց, որ այնտեղ անխտիր կոտորեցին էրիկմարդ, կին, մանուկ, որ կիները սպաննուելէ առաջ լլկուեցան, որ հարիւրաւոր կիներ զինուորներու մատնուեցան սուրի և սուիններու զոհ երթալէ առաջ։

Ինչի՞ կը ծառայէ պատմել ձեզի, ինչ որ գերմանացի ճամբորդ մը իմացաւ տեղին վրայ, Քէնտրանցի մէջ, ուր քիւրդերը երդում ըրած էին, հինգ տարեկանէն վեր բոլոր իգական սեռը պղծել։

Ուրիշ տեղ մը 60 կին և աղջիկ զօրքերուն յանձնուած փակուեցան եկեղեցիի մը մէջ և ի վերջոյ սպաննուեցան նոյն զօրքերէն. եկեղեցիի դրան տակէն արիւնը ջրի պէս կը վազէր։

*Եթէ անմոռանալի տպաւորութիւն մը ընել ուզէ մարդ, պէտք է մանրամասնութեան մէջ մտնել։*

*Մարդ այնքան չի զարմանար երբ լսէ թէ հարիւրհազարաւորներ սպաննուած են, որքան երբ լսէ անոնց մէկ հատին ինչպէս սպաննուիլը։*

*Յղի կին մը զօրքերու առջև ծունկի եկած կը գերեկնար որ խնայեն իրեն։ Տղա՞յ է թէ աղջիկ, պոռացին զօրքերը։ Եւ տղայ է ըսելով եօթը մէճիտիէի գրաւ բռնեցին։ Տեսնենք ո՞րն է ըսին և թշուառ կնոջ արգանդը ճեղքեցին։*

*Ան որ կը պատմէ այս տեսարանը, կարող է դէպքին մանրամասնութիւնը և վկաներուն անունները տալ։*

*Ուրիշ տեղ մը, քիւրդերը գրաւ բռնեցին թէ իրենք կարող էին մէկ հարուածով չորս մանուկի գլուխ թռցնել և անոնք ասի ըրին տղոց մայրերուն աչքին առջև։*

*Տրապիզոնի մէջ կոտորածի առաջին օրը, հայ մը հացագործին խանութէն դուրս կ'ելլէր, ուր գացած էր իր հիւանդ կնոջ ու զաւակներուն համար հաց գնելու։ Յանկարծ վրայ կը հասնի մոլեգին խուժբ մը։ Մարդը շնորհ կը խնդրէ. ի վերջոյ հաւատալով կատղած խմբին խոստումներուն կ'ուզէ մեկնիլ, սակայն պարզապէս կը խընդային անոր վրայ։ Կը բռնեն մարդը, ոտքերը կը կապեն և մէկ ձեռքը կտրելով՝ անով կը զարնեն երեսին։ Յետոյ միւս ձեռքը կը կտրեն և կը հրամայեն որ խաչ հանէ, մինչդեռ ուրիշներ կը յորդորեն ուժով պոռալ՝ որպէսզի իր Աստուածը կարող ըլլայ լսել իր պաղատանքները։ Սպանիչներէն մէկը ականջները կտրելով անոր բերանը խոթելէ յետոյ երեսին կը շպրտէ։ Ուրիշ մը կը պոռայ. „Էֆէնդիի բերանը, որ արհամարհեց այսպիսի համեղ կերակուր մը, պէտք է պատժուի“։ Լեզուն կը կտրեն. այլևս պիտի չը կրնայ հայհոյել։ Դաշոյնի ծայրով անոր աչքերը կը հանեն, այնպէս որ իր դէմքին զարհուրելի կծկումները, խեղճ մարմնին ջղացնցումները, արիւնին տեսքը աւելի ու աւելի կը գազանացնեն այդ մոլեռանդները. յետոյ մէկալ աչքն ալ կը փորեն և ոտքերն ալ կը կտրեն. մահացու հարուածը տալէ առաջ։*

(Շատ տիկիններ կը հեծկլտան, ոմանք ոտքի կ'ելլեն, ուրիշներ սրահէն դուրս կ'ելլեն)։

Էրզրումի անգլ. հիւպատոսին տեղեկագրին մէջ նըկարագրուած է տեսարան մը, որ տեղի ունեցած է Սէմալ գիւղին մէջ, կոտորածները դեռ չը սկսած։ Հայ Ազօն մերժած էր բերան տալ գիւղի ամենալաւ բնակիչներէն մէկ քանին։ Դատաւոր Թալիպ էֆէնդին և երկու թիւրք հարիւրապետներ գիշերն ի բուն չարչարել կուտան զայն։ Լաւ մը գանակոծելէ յետոյ մերկ թևերը տարածած գերանի մը կը կապեն ու կը սկսին մտրակել։ Թշուառը բոլորովին չէր կարող շարժիլ։ Իր դէմքին կծկումները անոր տառապանքները կը մատնէին։ Քանի կը պօռայ, այնքան կը զարնեն։ Կը պաղատի դահիճներուն որ սպաննեն զինքը։ Կը փորձէ գերաններուն զարնելով փշրել գանկը. կ'արգիլեն։ Որովհետև չէր ուզեր իրեններուն դէմ սուտ վկայել, ոչ ալ անմեղ արիւն մտնել, Թալիպ աքցանով նախ անոր մօրուքին թելերը փետտել կուտայ, յետոյ հրաշէկ երկաթով անոր ձեռքերը, երեսը և մարմինը կը դաղեն և կարմրած ունելիով լեզուն կ'այրեն։ Երեք անգամ կը մարի և սակայն անյողդողդ կը մնայ։

Քովի տանը մէջ իր կինը և զաւակները սարսափած մտիկ կ'ընէին անոր կողկողանքը։

Հապա բանտին մէջ եղողնե՞րը։ Պիթլիսի մէջ, խեղճ բանտարկեալները հարիւրներով վրայէվրայ կը լցուին, որոնք յաճախ, գարշելի աղտեղութեան պատճառով, ոչ կրնան պառկիլ ոչ ալ նստիլ, և անօթի մնալը հերիք չէ, շատ անգամ ալ տանջանքներու կ'ենթարկուին։

Պիթլիս, երևելի հայերէն մէկը, Համբարձում Պօյաճեան, մութ և խոնաւ զնդան մը նետեցին, ձեռքերը և ոտքերը ծանր անուրներ և շղթաներ դրին։ Անօթի ձգելով, ջանացին խոստովանութիւն մը ստորագրել տալ անոր, թէ անգլիական կառավարութենէն կաշառուած է։ Բայց որովհետև յամառութիւնով կը մերժէր, 10 քիլօնոց գունտ մը անցուցին անոր ճիտը և սկսան խարազանել. իսկ կեցած բանտին գետնին վրայ սրածայր գամեր տնկելով՝ վրայէն քաշկռտեցին մինչև որ մարեցաւ։

Գիտեմ, կը զգամ որ ակամայ մտիկ կ՚ընէք զիս։ Հոգինիդ կը սեղմէք որ չը պոռաք երբեմն.—Ալ հերիք է։ Գիտեցի արդէն որ շատ մը տիկիններ սրահը ձգեցին դուրս ելան։ Անհնելի կը թուի ձեզի մտիկ ընել այս պատմութիւնները։ Բիւրապատկեցէ՛ք ինչ որ ես ձեր առջև պարզ դրի և ըսէ՛ք թէ ինչ որ Պերլինի տիկինները ականջ չունեցան լսելու, հայերը անոր հարիւրապատիկը կրեցին։

Այս բոլորը մեր օրերը պատահած բաներ են, վերջին տասնամեակին մէջ, ասկէ չորս հինգ օր հեռու, և մենք ձգեցինք որ կատարուին և ոչինչ ըրինք արգիլելու համար։

Եւրոպային շատոնց յայտնի էր։ Սասունի ջարդերու պատրաստութիւնները այնքան բացէիբաց կազմակերպուեցան, որ Էրզրումի անգլ. հիւպատոսը, երկար տեղեկագրի մը մէջ, հայերուն համար պաշտպանութիւն խնդրած էր։ Անգլիան չէր ուզեր „բարեկամ տէրութեան մը ներքին գործերուն խառնուիլ“. ահա ընդունուած բանաձևը։

Ամենէն չը լսուածը ան է որ այս ողբալի վիճակը մինչև այսօր կը շարունակուի, մինչդեռ Եւրոպան չի կըրնար ըսել այլևս թէ չը գիտէ։ Հայերը միշտ զրկուած են իրենց ազատութենէն, կը կողոպտուին, կը տանջուին, կը կոտորուին, մէկմէկ կամ համայնակի։

Կրնայի հազարաւոր օրինակներ յիշել։ Ահա և անոնցմէ մէկը.

1900 յուլիս 3-ին, 500 քիւրդ Սպաղանք գիւղը պաշարեցին և վրան յարձակեցան։ Կիները և մանուկները լալով պաղատելով զօրքերուն ընդ առաջ գացին։ Փոքրիկ մանուկները ողջ-ողջ սուիններու վրայ հանուեցան, կիները մերկացնելէ և անպատուելէ յետոյ սպաննեցին։ Գիւղի ութսունամեայ ծերունի քահանային բերնին երկու կողմը ճեղքեցին և ծնօտը փրցուցին։ Գիւղին ռէսին յղի կնոջ՝ Թիմէնին արգանդը բացին և մանուկը կտրտեցին, իսկ մայրը դաշոյնի յիսուն հարուածներով ծակծակ ըրին։

Մենք վաղուց ի վեր գիտենք թէ մեր քաղաքակրթութիւնը չ՚արգիլեր անհատական ոճիրը, գողութիւնը

և աւազակութիւնը։ Կը ցաւինք այս բաներուն վրայ, բայց անոնք չէին դպչեր քաղաքակրթութեան վերին աստիճանին, որուն մենք հասած ըլլալ կը կարծենք։

Մենք վաղուց ի վեր գիտենք թէ մեր մտամշակութիւնը, նոյնիսկ ամենայառաջադէմ պետութիւններու մէջ, չի վտարեր հասարակական թշուառութիւնը, աղքատներուն խեղճութիւնը և լքումը։ Եւ նոյնիսկ ամենէն թշուառներուն կարօտութիւնը, կարծենք թէ, անհաշտ չէ մեր այժմու քաղաքակրթութեան բարձր մակարդակին հետ։

Գիտենք թէ ինչ ըսել է պատերազմ. թէ ի՛նչպէս վառ կիրքերը կը հրահարէ ան և ինչ արհաւիրքներ կը քաշէ կը բերէ իր ետևէն։ Սակայն մենք հին ժամանակներու ձևով չենք կռւիր։ Զօրապետները կամովին չեն ներեր խաղաղ բնակիչները. որոշ պարագաներու մէջ միայն կիներուն և մանուկներուն ձեռք կը դպցնեն, ինչպէս երբ քաղաք մը ռմբակոծուի։

Նոյնիսկ պատերազմը չի հակասեր գաղափարին որ ունինք թէ մենք քաղաքակրթութեան ամենաբարձր աստիճանի վրայ կը գտնուինք։ Որքան ալ պարտաւորուած ըլլանք հաշտուիլ բազմաթիւ ոճիրներու, հասարակական անարդարութեան և անգթութեան, ցեղային և կրօնական ատելութեան և պատերազմի արհաւիրքներու գոյութեան հետ, բայց միշտ մնացին այնպիսի չարագործութիւններ, որոնք՝ իբր հնութեան և միջին դարու պատկանողներ՝ անհասկնալի նկատեցինք մեր օրերուն մէջ։ Ասկէ յետոյ այդպէս նկատելու իրաւունք չունինք այլևս։ Այն օրէն երբ Եւրոպան չարգիլեց Հայաստանի մէջ գործուած պղծութիւնները և որոնք այժմս կը կատարուին Մակեդոնիայի մէջ, չենք կրնար յաւակնիլ, թէ մեր դարը պատմութեան էն մռայլ դարերէն բարձր ըլլայ։

1848-ին, երբ անցեալ դարը վճռական քայլ մը կ'առնէր և կը մտնէր նոր շրջանի մը մէջ, կը խորհէր թէ երկրորդ կէսը պիտի նուիրէր ժամանակակից է'ն կնճռոտ և է'ն փափուկ հարցերուն—անհատին և մարդկութեան դաստիարակութեան հարցերուն։

*Ազգային վեհապետութեան և ժողովուրդներու ինքնավարութեան, ազգերու և անհատներու անբռնաբարելիութեան հինաւուրց հարցերը, մամուլի, կրօնի և մտքի, խօսելու և ընկերակցութիւններու ազատութեան հարցերը միանգամ ընդմիշտ լուծուած համարուած էին, այնպէս որ այդ մասին խօսք անգամ պիտի չըլլար։*

*Եւ յիսուն տարի ետքը, Ռուսաստանի մէջ տակաւին* 130 *միլիոն մարդ կայ, որոնք իրաւունք չունին գիրք կամ թերթ կարդալու, եթէ իրենց խնամակալները չթոյլատրեն և միմիայն այս իրողութիւնը թէ հոն հարիւր միլիոն մարդիկ կը համակերպին իրերու այսպիսի վիճակի մը, Եւրոպայի կէսը վհատեցուց։*

*Հէնց մեր շուրջը, ազգերը կը հարստահարուին. ամենաընտիր մտքերը դեռ կը զբաղին դաւանանքի և ազգայնական հինումին հարցերով, որոնց վրայ ոչ մէկ նոր և խելացի բան չէ կարելի ըսել այլեւս։ Ու այս խնդիրները դեռ խանդավառութիւն կը զարթեցնեն, հերոսներ ու դաւաճաններ կը հանեն մէջտեղ, սխրագործութիւններ առաջ կը բերեն, որոնք հարիւր տարի առաջ հասկնալի էին, և պատճառ կ'ըլլան թշուառութիւններու և սարսափներու, որոնք պէտք էր որ միջին դարու մէջ արդէն վերջացած ըլլային։*

*Մինչդեռ ամենակարևոր խնդիրները կը սպասեն իրենց լուծումին, ներկայ սերունդի միտքը ու կեանքը կը փճանան և կը վայրավատնուին բոլորովին անպէտ և հազար անգամ ծեծուած հարցերու համար։*

*Մարդ կեանք մ'ունի միայն ապրելու և սակայն բոլոր եղած բաներուն կէսը մարդկային սեռի բնաշրջումին մէջ ուշացում մըն է։*

*Կ'ըսէի որ եթէ հայերը միմիայն իրենց դժբախտութիւնը ունենային, նորէն արժանի էին մեր կարեկցութեան և օգնութեան։*

*Սակայն հայերը քաղաքակիրթ ժողովուրդ մըն են, հողագնդի հնագոյն ազգերէն մէկը, մօտ* 4000 *տարուայ պատմութիւն մը ունին և թէ իրենց երկրին մէջ, թէ*

իրենց երկրէն դուրս քաղաքակրթութեան դատին մեծ ծառայութիւններ ըրած են։

Հայաստանը կը յիշեցնէ Զուիցերիան, անոր ժողովուրդին ճակատագիրը լեհերուն ճակատագիրը կը մտածեցնէ։

Հայաստանը Փոքր-Ասիոյ Զուիցերիան է, լեռնոտ երկիր մըն է որ ազատութեան սիրահար մարդիկ կը ծնի։ Արարատեան երկիրն է որուն վրայ կ'իշխէ ձիւնապատ և վեհափառ Մասիսը, երկիրը մեծամեծ լիճերու և մանաւանդ անհամար վճիտ և սառնորակ աղբիւրներու, որոնք ամէն կողմէ դուրս կը ժայթքին և ամէն կողմ վտակ վտակ կը հոսին։ Ամէն կողմ առուներ, որոնք ժայռերու խոր ծերպերէն դուրս պոռթկալով դէպի գետերը կը վազեն։

Հոն կան ընդարձակ արօտներ, ցորենի հարուստ դաշտեր և առատ-առատ խնձորենիներ, տանձենիներ, այգիներ և նռնենիներ։

Ամէն կողմ կը լսուին սոխակներու դայլայլները, փասիանը և սիրամարգը արևաճեմ կը խայտան։ Անտառներու մարգերուն վրայ կը տեսնուին շնորհալի վիթեր, լեռներու կուշտերուն վրայ կը ցատկռտեն վայրի այծեամներ, իսկ գիւղերու բոլորտիքը կը թափառին գայլեր, բորենիներ, շնագայլեր։

Ինչպէս լեհացիները, հայերը ևս բաժանուած են երեք տէրութիւններու միջև. Ռուսիոյ, Պարսկաստանի և Թիւրքիոյ։ Բացի իրենց մայրենի լեզուէն, ուսում առած հայերը առհասարակ գիտեն տիրապետող երեք ազգերու լեզուն և ընդհանրապէս կը հասկնան ու կը գրեն եւրոպական լեզու մը։

Արևելքի բոլոր ժողովուրդներուն մէջ հայերը Եւրոպայի ամենէն աւելի մօտեցող ժողովուրդն են, և ինչպէս կ'ըսեն, Ասիոյ մէջ եւրոպական քաղաքակրթութեան առաջապահը։

Թէպէտ իրենց երկիրը Ասիոյ աշխարհակալ ժողովուրդներու արշաւանքի ճամբուն վրայ գտնուելով, շարունակ ոտնակոխ եղած է և՛ օտարներու լուծին տակ ինկած (ինչպէս Ասորեստանցիներուն, Մարերուն և Արաբնե-

*րուն), բայց ան ցոյց տուած է բոլորովին արտակարգ տոկունութիւն մը և ինչպէս նաև իւրացնող ահագին ուժ մը։*

*Պարթև Թագաւորները, որոնք Ք. Ա. 11-րդ դարուն թագաւորեցին Հայաստանի վրայ, հայացան։ Կարելի է, որ Բագրատունեաց տան թագաւորները, որոնց մեծ մասը պատուական վեհապետներ եղան, և որոնք յաջորդեցին Պարթև Թագաւորներուն, հայացած հրէաներ եղած ըլլան, սակայն իրենց ծագումը պատմականօրէն չէ ապացուցուած։*

*Հնուց մինչև մեր օրերը, Հայաստանը մեծ մարդեր տուած է օտարներուն։ Բիւզանդական կայսրութեան մէջ, հայերը երևելի զինուորականներ և իմաստուն բարենորոգիչներ էին. նոյնիսկ տասներկու բիւզանդական կայսրեր հայազգի էին։*

*Թիւրք կայսրութեան մէջ, հայերը իրենց դիրքը պահեցին իբր յառաջադիմասէր տարր. վաճառականութիւնը իրենց ձեռքն էր և նշանաւոր հանդիսացած են իբր արուեստագէտ և իբր գործի ու պետական մարդիկ։ Նուպար փաշա, որ Եգիպտոսը կառավարեց, հայ մըն էր. ռուս դիկտատոր Լորիս Մելիքօվը նմանապէս հայ էր։*

*Հայ ժողովուրդը առաջինը ըլլալով քրիստոնէութիւնը ընդունողներէն, իր հին հեթանոս բանաստեղծութիւնը դժբախտաբար և մեծ մասամբ կորած է։*

*Այդ ատեն ոչ միայն քար ու քանդ ըրին հին տաճարները, այլ նաև փճացուցին բանաստեղծութիւնները, որոնք կը փառաբանէին աստուածները և հերոսները։ Մնացած հատ ու կտորները՝ որոնք վկայ են հայ ժողովրդի քնարերգակ ոգիին, բաւական են սակայն հայ աստուածութիւններու պանթէօնը հրաշակերտելու համար։*

*Այդ աստուածութիւնները չունին ոչ ասիական աստուածներու հսկայութիւնները, ոչ ալ յունական աստուածներու շնորհալիութիւնը. անոնք զիրենք ստեղծող ժողովրդին պէս աշխատասէր, ողջամիտ և բարի են։*

*Երկրի հին ճարտարապետութեան մէջ, որ շատ հարուստ էր, կը գտնենք նմանապէս արևելա-արևմտեան*

միեւնոյն դիմագծութիւնը, ասորական և պարթեւական ձեւերու յունական ոճին հետ խառնուրդ մը։

Քրիստոնէութիւնը հայերուն մտամշակութեան նոր տարր մը եղաւ, և նոյնիսկ ազգային տարր մը։

Երբ Հայաստանը կորսնցուց իր քաղաքական անկախութիւնը, եկեղեցին՝ ազգային աւանդութեան խորհրդանշանը և պահապանը եղաւ, ինչպէս ապագային նոյնը պիտի ըլլար Լեհաստանի համար։

Գրականութիւնը այն ատեն մասամբ պատմական իսկ մեծ մասով եկեղեցական հանգամանք մը ստացաւ, որ կը բաղկանար կրօնական գոյն ունեցող քրօնիկներէ և միստիքներէ, բայց որ կը պահէր իր մէջ բնորոշ կամ մանաւանդ մելամաղձոտ բանաստեղծութիւն մը։ Օրինակի համար, կան լոյսին ուղղուած սիրուն օրհներգներ, բանաստեղծական աւիւնով լեցուն պատմական գրոյցներ Մովսէս Խորենացիէն, որ ուսումը առած էր Յունաստանի մէջ և ծանօթ էր Իլիականին։ Հայ պատմագիրը կը պանծացնէ հերոսներու քաջագործութիւնները և կը սիրէ իր երկիրը, կը գովաբանէ հրաշալի գեղեցկութիւնը Վասպուրականի, որը Շամիրամ թագուհին իրեն ամարանոց ընտրեց։

—„Մենք կըսէր Շամիրամ, պէտք է շինենք քաղաք մը և արքայական պալատ մը այնպիսի երկրի մը մէջ, ուր կլիման այնքան քաղցր ըլլայ և օդն այնքան մաքուր, որ բոլոր բերկրութիւնները կարելի ըլլայ վայելել“։

Ուրիշ պատմագիր մը, Եղիշէ, որ Վարդանանց պատերազմը նկարագրած է, հռչակաւոր հատուածի մը մէջ կ'երգէ հայ կիները, որոնք ամէն ժամանակ բացառիկ արիութիւն ցոյց տուած են, և դեռ վերջերս Սասունի մէջ յիսուն կիներ անդունդի մը մէջ նետուեցան թիւրքերուն ձեռքը չիյնալու համար։ Իսկ Բալուի մէջ, միեւնոյն պատճառով, երեսուն կիներ Եփրատի մէջ ջրամոյն եղան, սաղմոս երգելով։ Եղիշէն նկարագրած է նմանապէս պատերազմի ժամանակ հայ կիներու առաքինութիւնը և անձնուրացութիւնը։

Լաստիվերտացի վարդապետը, որ թաթարներու և

պարսիկներու արշաւանքները կը պատմէ, իր քրօնիկներուն մէջ կը նկարագրէ արդէն 900 տարի առաջուայ Հայաստանը „մերկ, ճամբուն եզերքը ինկած, բոլոր ժողովուրդներէն ոտնակոխ, տնանկ, կալանաւոր և գերի“։

15-էն 19-րդ դարերուն մէջ, հայկական ազգային ոգին բոլորովին խորտակուած, գրեթէ ոչնչացած էր։

Եկեղեցին մինակ կանգուն կը մնար։ Հին ձեռագիրները կը նիրհէին մենաստաններու մէջ։ Մխիթար աբեղան, հասկնալով որ անկարելի է Թիւրքիոյ մէջ հայ ազգին մտաւոր վառարան մը կանգնել, առաւ Վենետիկ տարաւ ամենէն թանկագին ձեռագիրները։ Հոն հիմնեց Ս. Ղազարու վանքը, որ տեսակ մը հայ համալսարան էր, և ուր լորդ Պայրըն հայերէն լեզուն սորվել սկսաւ։ Ս. Ղազարու վանականները մեծ գործունէութիւն ցոյց տուին իբր թարգմանիչ և այսպէս իրենց հայրենակիցներուն ծանօթացուցին հին և նորագոյն Եւրոպայի գրական գանձերը, Հոմերէն մինչև Շիլլէր, անցնելով Ռասինէն և Ալֆիէրիէն։

Այդ ատենէն կը սկսի գրականութեան մէջ գրաբառի տեղ աշխարհաբառի գործածութիւնը և որուն հետևանքն եղաւ 19-րդ դարու մէջ հայ մտաւոր կեանքին հոյակապ ծաղկափթթումը։

Եւրոպայէն դարձող երիտասարդները իրենց հետ տարին եւրոպական քաղաքակրթութեան արտադրոյթները և հիմնեցին պարբերական հրատարակութիւններ, դպրոցներ և ազգային թատրոն մը։

Հայ ազգային ոգին շարունակեց հետզհետէ եւրոպականանալ։ Կովկասի մէջ ռուս ազատական գրականութեան և գերմանական հասարակատնտեսութեան երկասիրութիւններու ազդեցութեան տակ, ծնունդ առաւ Նոր հայ գրականութիւն մը։ Խաչատուր Աբովեան, 19-րդ դարու կէսին եղերերգակ բանաստեղծ մը, որուն տաղերուն մէջ երբեմն կը փայլին ֆրանսական յեղափոխութեան դաշոյնին ցոլքը, իր „Վէրք Հայաստանի“ արձակ գրուածքով հայ վիպասանութեան հիմը դրաւ։ Նալպանտեան հայ ժողովրդին տուաւ իր ազատութեան երգերը։ Ցաղանդա-

ւոր հրապարակագիրներ՝ ինչպէս Նազարեանց, Արծրունի և թատերագիրներ՝ ինչպէս Սունդուկեանց, սաստիկ յարձակեցան իրենց հայրենակիցներու նախապաշարումներուն վրայ. Ռափայէլ Պատկանեան դարագլուխ կազմեց իր ազատաշունչ երգերով։ Րաֆֆի, տաղանդաւոր գրագէտ, հայ վիպասանութեան շրջանակը լայնցուց և գրեց „Ջալալ էդդին“ վէպը—թարգմանուած եւրոպական շատ մը լեզուներու—որ կը նկարագրէ 1877-ի Հայաստանի վիճակը և սահմռկող պատկերը կը գծէ այդ թուականի հայ ժողովրդի մարտիրոսութեան։ Ինչ որ մենք սարսափով տեսանք, յարձակումները, գազանութիւնները, թշուառ նահատակները, ցցի զարնուածները, կարմրած երկաթով չարչարուողները, բոլորը այս գրքին մէջ կան։ Այս վէպը գրեթէ նոյն տպաւորութիւնը կ՚ընէ, ինչ որ 1894—96-ի կոտորածներու վայրքերէն գրուած նամակները։

Այդ երկար ժամանակաշրջանին մէջ, ուր ազգային ոգին թմրածի պէս էր, ժողովրդական երգը միշտ կենդանի և վառ մնացած կ՚աճէր ու կը մեծնար. ոչ մէկ ժողովուրդ չունի հայկական երգերուն նման երգեր—պանդուխտի աղիողորմ և սիրոյ տարփալից երգեր։

Կազմւեցաւ նոր սերունդ մը, որ հին Հայաստանի պատմութեան ծանօթ, բայց ժամանակակից կրթութիւն առած, բողոքեց կառավարութեան անարդարութեան և քիւրդերու անգթութեան դէմ։ Ահա այս էր պատճառը որ Ներսէս պատրիարք, 1878-ին, հոս Պերլինի վեհաժողովին պատգամաւորութիւն մը ղրկեց և յաջողեցաւ ձեռք բերել 61-րդ յօդուածը, որ պիտի ապահովէր Հայաստանի ապագան։ Այս յօդուածին խոստումները երբեք չը պահուեցան. դեռ այսօր այդ յօդուածին կը յուսադիժեն Հայաստանի բոլոր բարեկամները։

Այնպէս կ՚երևար թէ Եւրոպան հարստահարուած ժողովրդին դատը սրտի մօտիկ բռնած էր։ Աւա՜ղ, պետութիւններուն ցոյց տուած շահագրգռութիւնը լուրջ չէր։ Եւ ճիշտ պարագան եկաւ որ հայերը համարձակեցան կոչ ընել Եւրոպային Թիւրքիոյ դէմ, որ սաստիկ կատղեցաւ այդ բանէն։

*Պոլիս հայկական թատրոնը փակւեցաւ։ Արգիլեցին հայոց պատմութեան ուսուցումը. ժողովները, տօները, բանախօսութիւնները և մամուլը ամենախիստ գրաքննութեան ենթարկւեցան։*

*Բանտարկութիւնները և հալածանքները վերսկսան սարսափելի և անխնայ կերպով։ Հայերու դէմ քրդական հեծելագունդեր կազմեցին Համիդիէ ալայը անունով։ Սուլթանը իր անունը տւաւ այս պաշիպօզուք գունդերուն և զանոնք արձակեց իրենց դժբախտ հարեւաններուն վրայ որ կողոպտեն և սպաննեն։*

*Որովհետեւ հայերը սկսան շատ մը տեղեր այս աւազակային հօրդաներուն դէմ ինքնապաշտպանւիլ, ասիկա պատրւակ մը եղաւ տանջանքներով ու կոտորածներով բնաջինջ ընելու համար այս կեավուր բնակիչները։*

*Պերլինի վեհաժողովին մէջ, Օսմ. կառավարութիւնը յանձն առած էր 61-րդ յօդւածով հարկաւոր բարենորոգումները մտցնել. պատասխանատու էր հայերու ապահովութեան չերքէզներու, քրդերու յարձակումներու դէմ, և պարբերաբար պէտք է տեղեկութիւն տար տէրութիւններուն իր միսիոնի մասին։ Միջոցներու գործադրութեան հսկելու իրաւունքը ստորագիր պետութիւններուն տրւած էր։*

*Տասնեհինգ տարի շարունակ Թիւրքիան դատարկ խօսքերով խաղցուց Եւրոպան։ Եւ եթէ, փոխանակ բարենորոգումներ սկսելու, ընդհակառակը, որոշեց անգլ. ֆրանս. և ռուս դեսպաններու նօթաներուն պատասխանել միահամուռ կոտորածներ սարքելով, այդ բանին մէջ քաջալերւեցաւ—ինչպէս կ'ըսէ լաւատեղեակ ճանապարհորդը Պօլ Ռօրպախ, ջերմ հայրենասէր մը միանգամայն—Գերմանիոյ հետ ունեցած „ամենալաւ յարաբերութիւններէն“։*

*Թիւրքիան, ամեն կողմէ նեղը մտած, պիտի ստիպւէր տեղի տալ տէրութիւններու գործակցութեան առջև։ Միայն Գերմանիոյ հետ ունեցած բարեկամական յարաբերութիւններն էին որ փախուստի դուռ մը կը բանային անոր։ Պաշարումը՝ ուրկէ կը վախնար Սուլթանը,*

տեղի չունեցաւ։ Դուրս սպրդեցաւ նորէն ցանցի օղակներէն և արձակ համարձակ սուրի և հուրի սարսափով լռեցուց հայերը։

Անուրանալի է որ գերմանացիները, տղամարդ և կին, ահաւոր կոտորածներէն յետոյ գթութեան ձեռք կարկառեցին։ Գերմանական նուէրներով հաստատուեցան որբանոցներ և կրթարաններ։

Ամէն մարդ գիտէ Էտուարտ Պէրնշտայնի ճառը, և ամէն մարդ գիտէ որ Լէփսիուս, ամէն ջանք ըրաւ իր հայրենակիցներուն առջև մերկացնելու համար Հայաստանի ճշգրիտ վիճակը· շատ նշանակալից է սակայն այն եղանակը, որով հրամայուեցաւ անոր լռել այս մասին։

Եւ սակայն եթէ գերմանական կայսրութեան և Թիւրքիոյ մէջ եղող սերտ յարաբերութիւնները չըլլային, ամենամեծ պաշտօնական ոճիրը, որ դարերէ ի վեր գործուած ըլլայ, չէր կատարուեր։ Այս պատճառով Գերմանիոյ մէջ ամէն բանէ առաջ, պէտք է ստեղծել հայանպաստ կարծիք մը։

Հին Իռլանտայի հռչակաւոր մէկ առասպելին մէջ, կին մը իր սպաննուած ամուսնին արիւնթաթախ վերարկուն կը նետէ ազգականի մը ուսերուն վրայ, որ անյօժար էր իր դատը պաշտպանելու, որպէսզի այսպիսով վրիժառութեան դրդէ զայն։

Մենէ ոչ ոք կը մտաբերէ վրիժառու ըլլալ։

Սակայն, եթէ կարելի ըլլար հայկական զոհերու արիւնլողիկ վերարկուն ձգել գերման ժողովուրդի ուսերուն վրայ, որպէսզի նա ստիպէ իր կառավարութիւնը՝ ձեռք բերելու այս փառաւոր ազգի ողջ մնացողներուն ապահովութիւնը և ազատութիւնը, ասիկա պիտի ըլլար հրաշալի գործ մը։

---

